## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78

# ԼԵՆԻՆԻ—ՍՏԱԼԻՆԻ ՊԱՐՏԻԱՅԻ ՈՒԺՆ ԱՇԽԱՏԱՎՈՐ ՄԱՍՍԱՆԵՐԻ ՀԵՏ ՆՐԱ ՍԵՐՏ ԿԱՊԻ ԵՎ ԱՆԽԶԵԼԻ ՄԻԱՍՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ Է

Մեր մեծ ուսուցիչ, առաջնորդ և հայր, մարդկության մեծագույն հանճար Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի մահը պարտիայի, սովետական ժողովրդի, ամբողջ աշխարհի առաջավոր մարդկության համար ամենածանր կորուստն էր։

Մեծ առաջնորդի մահից հետո պարտիան և սովետական ժողովուրդը է՛լ ավելի են միաձուլվում և սերտորեն համախմբվում Սովետական Միության Կոմունիստական պարտիայի լենինյան-ստալինյան Կենտրոնական Կոմիտեի, հարազատ կառավարության շուրջը։ Պարտիայի և ժողովրդի պողպատե միաձուլությունը Լենինի—Ստալինի գործի լիակատար հաղթանակի գլխավոր գրավականն է։

Լենինի—Ստալինի մեծ պարտիայի հզորությունը, ուժն ու անպարտելիությունը աշխատավորների միլիոնավոր մասսաների, ժողովրդի հետ ունեցած նրա կենսական ու անխզելի կապի և միասնության մեջ է։ Սովետական Միության Կոմունիստական պարտիան աշխարհի ամենաժողովրդական պարտիան է, ժողովրդի շահերի պաշտպան պարտիան։

«Մեր պարտիայի ուժն այն է,— ասաց պարտիայի 19-րդ համագումարում ընկ. Գ. Մալենկովը,— որ նա հազարավոր թելերով կապված է լայն մասսաների հետ և հանդիսանում է իսկական ժողովրդական պարտիա, որի քաղաքականությունը համապատասխանում է ժողովրդի կենսական շահերին»։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան, որը ծնունդ է առել անցյալ դարի 80-ական թվականներին Ռուսաստանում հրապարակ եկած առաջին մարքսիստական խմբերից ու խմբակներից և անցնելով երկար ու փառապանծ ուղի դարձել է բանվորների ու գյուղացիների աշխարհում առաջին սոցիալիստական պետության ղեկավար ուժը, իր ստեղծման օրվանից հանդես է եկել որպես բանվոր դասակարգի, աշխատավոր գյուղացիության և ողջ ժողովրդի կենսական



շահերի պաշտպան։ Լենինի—Ստալինի պարտիան ուրիշ խնդիր չի ունեցել, բացի ժողովրդին ծառայելը, բացի աշխատավորներին շահագործողների լծից ու ստրկացումից ազատագրելը, բացի բնաջնջող պատերազմներից մարդկությանը փրկելը և աշխատավոր ժողովրդի ազատ ու երջանիկ կյանքի համար պայքարելը։

Մեր հզոր պարտիան ստեղծել են մարդկության մեծագույն հանճարներ Լենինը և Ստալինը։ Լենինը և Ստալինը իրենց ամբողջ գիտակցական կյանքը նվիրաբերել են ռևոլյուցիոն պայքարին, ժողովրդին ծառայելուն և պարտիային անդադրում սովորեցրել են ծառայել ժողովրդին, ամրապնդել կապերը աշխատավորական լայն մասսաների հետ։

Լենինը պարտիայից պահանջում էր սերտորեն կապվել դասակարգի ու մասսայի հետ, անպայման աշխատել այնտեղ, որտեղ մասսա կա։

Ինչո՞վ էր բացատրվում Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը։ Նրանով, որ Ռուսաստանի կոմունիստները իրենց ճիշտ քաղաքականությամբ կարողացան նվաճել մասսաներին, արտահայտել մասսաների կենսական պահանջները, ցույց տալ իրենց նվիրվածությունը, նշել նրանց ազատագրման ուղին, ամուր ու

հարազատ թելերով կապվել մասսաների հետ և նրանց գրոհի տանել կապիտալիզմի դեմ։

Մեծ Ստալինը, Լենինի անմահ գործի հանճարեղ շարունակողը, պարտիային անդադրում ուսուցանում էր, որ առանց մասսաների հետ լայն կապեր ունենալու, առանց այդ կապերը մշտապես ամրացնելու, առանց մասսաների ձայնին ունկնդրելու և նրանց վաղուց տանջող կարիքներն ըմբռնել կարողանալու, առանց ո՛չ միայն մասսաներին սովորեցնելու, այլև մասսաներից սովորելու պատրաստակամության, բանվոր դասակարգի պարտիան չի կարող լինել իրոք մասսայական, բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների միլիոններին իր հետևից տանելու ընդունակ պարտիա, մեր երկիրը հաղթանակից հաղթանակ տանող պարտիա։

«Կարելի է, որպես կանոն, ընդունել,—ասում էր ընկեր Ստալինը,— որ քանի բոլշևիկները պահպանում են կապը ժողովրդի լայն մասսաների հետ, նրանք անպարտելի կլինեն։ Եվ, ընդհակառակը, բավական է, որ բոլշևիկները կտրվեն մասսաներից և կորցնեն նրանց հետ ունեցած կապը, բավական է, որ նրանք ծածկվեն բյուրոկրատական ժանգով, որպեսզի նրանք զրկվեն ամեն ուժից և դատարկ բանի վերածվեն»։



Մեծ Ստալինի ղեկավարությամբ մեր պարտիան դարձավ անպարտիական լայն մասսաներին ավելի մոտիկ և հարազատ պարտիա, որի ղեկավարությանը նրանք հոժարակամ հանձնում են իրենց բախտը։

Ամրապնդելով բազմակողմանի կապերը ժողովրդական լայն մասսաների հետ, հենվելով միլիոնավոր աշխատավորների ամենալայն աջակցության վրա, Սովետական Միության Կոմունիստական պարտիան ընկեր Ստալինի իմաստուն առաջնորդությամբ պատմական ամենակարճ ժամանակամիջոցում մեր երկիրը հասցրեց սոցիալիզմի հաղթանակին։

Պարտիայի իմաստուն ղեկավարությամբ, սովետական ժողովրդի աշխատանքային չտեսնված սխրագործությունների միջոցով իրականացվեցին ստալինյան հնգամյա պլանները։ Մեր մեծ Հայրենիքը ընկեր Ստալինի հանճարեղ ղեկավարությամբ պատմական ամենակարճ ժամկետում հետամնաց երկրից վերածվեց աշխարհի ամենաառաջավոր ինդուստրիալ-ագրարային հզոր սոցիալիստական տերության։

Երբ 1941 թվականին հիտլերյան Գերմանիան ամերիկյան միլիարդատերերի խրախուսանքով և օգնությամբ սկսեց ագրեսիվ

պատերազմը Սովետական Միության դեմ, երբ այդ ծանր օրերին, որոշվում էր մեր երկրի բախտը, սովետական բոլոր ժողովուրդները և ամենից առաջ ռուս մեծ ժողովուրդը մեկ մարդու պես կանգնեցին Հայրենիքի պաշտպանության դիրքերում, Սովետական կառավարությանն ու պարտիային ցույց տվեցին ամենալայն աջակցությունն ու վրստահությունը, կանգ չառան ոչ մի զոհաբերության առաջ և ապահովեցին մեր երկրի համաշխարհային-պատմական հաղթանակը, ամբողջ մարդկությանը ազատագրեցին ֆաշիստական ստրկացումից։

Հայրենական Մեծ պատերազմի հաղթական ավարտումից հետո սովետական ժողովուրդը իր ամբողջ անսպառ էներգիան նվիրաբերեց ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման ստալինյան հանճարեղ կանխագծումների իրականացմանը։ Պարտիայի կոչով, ընկեր Ստալինի կոչով մեր ժողովուրդը աշխատանքային հերոսական սխրագործություններ կատարեց, իրականացրեց հետպատերազմյան ստալինյան հնգամյակը, ձեռնամուխ եղավ կոմունիզմի մեծ կառուցումներին և այժմ՝ ոգեշնչված ընկեր Ստալինի «Սոցիալիզմի էկոնոմիկական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» կլասիկ աշ-



խատությամբ, պարտիայի 19-րդ համագումարի պատմական որոշումներով, հաջողությամբ իրականացնում է ստալինյան նոր հնգամյա պլանը, որը խոշոր քայլ է սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու ճանապարհին։

Սովետական ժողովուրդը այժմ ավելի քան երբեք, ամուր և հարազատ թելերով է կապված Լենինի—Ստալինի հզոր պարտիայի հետ։

Լենինը և Ստալինը հիմնեցին բանվորների և գյուղացիների՝ աշխարհում առաջին, սոցիալիստական պետությունը։ Պարտիայի ամբողջ քաղաքականությունն այն է, որպեսզի է՛լ ավելի ամրապնդվի և հզորացվի մեր Սովետական պետությունը՝ խաղաղության և ժողովուրդների անվտանգության պատվարը։ Մեր երկրի ամբողջ աշխատավորությունը պաշտպանում է պարտիայի քաղաքականությունը, ակտիվորեն պայքարում է նրա իրականացման համար, որովհետև նա ձգտում է Սովետական պետության ամրապնդմանը, ժողովուրդների միջև երկարատև խաղաղության պահպանմանը, կոմունիստական հասարակության կառուցմանը։

Ընկեր Ստալինի իմաստուն ղեկավարությամբ մեր պարտիան լուծեց հասարակության զարգացման պատմության ամենաբարդ հարցերից մեկը՝ ազգային հարցը, լիկվիդացրեց ազգերի դարավոր երկպառակությունը, ստեղծվեց սոցիալիստական ազգերի միասնական եղբայրական ընտանիք։ Մեր պարտիայի ամբողջ քաղաքականությունը գնում է այն ուղղությամբ, որպեսզի է՛լ ավելի ամրապնդվի մեր երկրի ժողովուրդների եղբայրական բարեկամությունը, որի առկայության պայմաններում մեզ համար սարսափելի չեն ոչ ներքին, ոչ արտաքին թշնամիները։ Սովետական Միության բոլոր ժողովուրդները պաշտպանում են պարտիային, նրա քաղաքականությունը ազգային հարցում, որովհետև ժողովուրդների եղբայրական բարեկամության քաղաքականությունը համարում են իրենց հարազատ շահերից բխող քաղաքականություն։

Ընկեր Ստալինի անմիջական ղեկավարությամբ ստեղծվել, աճել և ամրապնդվել է Սովետական հզոր բանակը՝ մեր երկրի անկախության պաշտպանության հուսալի պատվարը։ Պարտիան իր սրբազան պարտականությունն է համարում Սովետական Զինված Ուժերի անդադրում ամրապնդումը, նրա



մարտական պատրաստականության բարձրացումը։ Սովետական բազմամիլիոն ժողովուրդը չի խնայում իր ուժերը ամրապնդելու Սովետական Բանակը, որովհետև այդ բանակը նա համարում է իր հարազատ բանակը, իր շահերի հուսալի պաշտպանը։

Ընկեր Ստալինի անդուլ ջանքերի շնորհիվ, նրա հանճարեղ պլաններով մեր պարտիան երկիրը դարձրեց ինդուստրիալ հզոր տերություն։ Պարտիայի ամբողջ քաղաքականությունը գնում է այն ուղղությամբ, որպեսզի ապահովվի սոցիալիստական Հայրենիքի հետագա ծաղկումը, զարգացնի սոցիալիստական արդյունաբերությունը՝ մեր երկրի հզորության և ամրության պատվարը, ամրապնդի կոլտնտեսային կարգը, հասնի նրա հետագա ծաղկմանը։ Մեր պարտիան ղեկավարվելով մեծ Ստալինի կողմից հայտնագործված սոցիալիզմի հիմնական էկոնոմիկական օրենքով, չի խնայում իր ուժերը անշեղորեն բարձրացնելու և ապահովելու սովետական բոլոր մարդկանց, ամբողջ հասարակության նյութական և կուլտուրական հարաճուն պահանջմունքների առավելագույն բավարարումը։ Սովետական մարդիկ, բոլոր բանվորները, գյուղացիները, ինտելիգենտները հերոսական աշխատանքային սխրա-

*գործունեություններ են կատարում իրականացնելու այդ, որովհետև պարտիայի այդ քաղաքականությունը իրենց շահերից բխող քաղաքականություն է։*

*Ընկեր Ստալինի առաջնորդությամբ ստեղծվեց խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի հզոր լագերը։ Լենինը և Ստալինը պարտիային և ժողովրդին դաստիարակում էին պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով, ժողովուրդների միջև բարեկամություն և խաղաղություն ստեղծելու ոգով։ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի և կառավարության արտաքին քաղաքականությունն այն է, որ ամրապնդվի աշխարհի բոլոր ժողովուրդների միջև բարեկամությունն ու խաղաղությունը, թույլ չտրվի նոր պատերազմ, թույլ չտրվի, որպեսզի թափվի միլիոնավոր մարդկանց արյունը։ Սովետական ամբողջ ժողովուրդը պաշտպանում է պարտիայի արտաքին խաղաղասիրական քաղաքականությունը, որովհետև նա ամբողջ հոգով ատում է պատերազմը և ձգտում է խաղաղ, երջանիկ կյանքի։*

*Լենինի—Ստալինի հզոր պարտիան ժողովրդի պարտիան է, նրա շահերին ծառայող պարտիան։ «Մեր պարտիայի ուժն ու անպարտելիությունը,— ասաց մեր հայր և ու-*



*սուցիչ Ստալինի թաղմանն արտասանած իր ճառում ընկեր Մալենկովը,— ժողովրդական մասսաների հետ անխզելի կապի մեջ է։ Պարտիայի և ժողովրդի միասնության հիմքը ժողովրդի շահերին պարտիայի հավատարիմ ծառայելն է։ Մենք պետք է աչքի լույսի պես պահպանենք պարտիայի միասնությունը, է՛լ ավելի ամրապնդենք պարտիայի անխզելի կապերը ժողովրդի հետ, կոմունիստներին և բոլոր աշխատավորներին դաստիարակենք քաղաքական բարձր զգոնության ոգով, ներքին և արտաքին թշնամիների դեմ մղվող պայքարում անհաշտության և հաստատակամության ոգով»։*

*Լենինի—Ստալինի մեծ գործի լիակատար հաղթանակի գրավականն այն է, որ պարտիան սերտ և հարազատ կապերով կապված է միլիոնավոր մասսաների հետ։*

*Ռ. ՄՈՎՍԻՍՅԱՆ*

(Պատմական գիտությունների թեկնածու)

# ԼԵՆԻՆԻ ԵՎ ՍՏԱԼԻՆԻ ՍՏԵՂԾԱԾ ՊԱՐՏԻԱՆ ՄԵՐ ԵՐԿԻՐԸ ՎՍՏԱՀՈՐԵՆ ԱՌԱՋ Է ՏԱՆՈՒՄ ԴԵՊԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*Լենինի և Ստալինի համաշխարհային-պատմական ծառայությունն այն է, որ նրանք ստեղծեցին Սովետական Միության մեծ Կոմունիստական պարտիան, որը ժողովրդական մասսաներին անձնվեր պայքարի հանեց հանուն հասարակարգի ռևոլյուցիոն վերափոխման, հանուն պայծառ ապագայի՝ կոմունիզմի կառուցման։*

*Հոկտեմբերյան ռևոլյուցիան վերջ դրեց կապիտալիստական կարգերին մեր երկրում և սովետական ժողովրդին դուրս բերեց նոր ուղի՝ սոցիալիզմի ուղին։*

*Լենինը և Ստալինը հիմնադրեցին աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը, որը մեծագույն շրջադարձ հանդիսացավ մարդկության հասարակության պատմության մեջ։*



*Մեծ Լենինի մահից հետո կոմունիզմի հանճարեղ ճարտարապետ ընկեր Ստալինը սովետական ժողովրդին հասցրեց մեր երկրում սոցիալիզմի համաշխարհային պատմական հաղթանակին, պարտիային և ժողովրդին զինեց սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու վեհ ծրագրով։*

*«Մեր սրբազան պարտականությունն է,— ասաց ընկեր Գ. Մալենկովը Ի. Վ. Ստալինի թաղմանը նվիրված սգո միտինգում,— ապահովել սոցիալիստական Հայրենիքի հետագա ծաղկումը»։*

*Հրաժեշտ տալով իրենց առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինին, սովետական մարդիկ խորապես վստահ են լենինյան-ստալինյան պատգամների հաղթանակի նկատմամբ, նրանք արտահայտում են իրենց աննկուն պատրաստակամությունը է՛լ ավելի սերտորեն համախմբվելու հարազատ Կոմունիստական պարտիայի, նրա Կենտրոնական Կոմիտեի և Սովետական կառավարության շուրջը, գործադրելու իրենց բոլոր ջանքերը կոմունիզմի կառուցման ստալինյան ծրագրի իրականացման համար։*

*Ի. Վ. Ստալինի «Սոցիալիզմի էկոնոմիկական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» հանճարեղ աշխատության մեջ նշված են այն պարզ ուղիները, որոնցով մենք պետք է ընթանանք*

առաջ, որպեսզի կենսագործենք մեծ առաջնորդներ Լենինի և Ստալինի անմահ իդեաները։

ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվները, որոնք մշակվել են մեծ Ստալինի անմիջական ղեկավարությամբ, հանդիսանում են Սովետական Միության՝ խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի պատվարի հզորության հետագա աճման հոյակապ ծրագիրը։

Հնգամյա պլանում կոնկրետ մարմնավորում են ստացել ստալինյան մեծ իդեաները սոցիալիզմից կոմունիզմին անցումը նախապատրաստելու պայմանների, սոցիալիստական արտադրությունը ամբողջ հասարակության մշտապես աճող նյութական և կուլտուրական պահանջմունքների առավելագույն բավարարման խնդրին ենթարկելու մասին։

Հինգերորդ հնգամյա պլանը նախատեսում է մեր երկրի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի և կուլտուրայի հետագա հզոր վերելքը։ Համագումարի դիրեկտիվներին համապատասխան՝ արդյունաբերության արտադրության մակարդակը հնգամյակի ընթացքում պետք է ավելանա 70 տոկո-



սով, ընդ որում արտադրության միջոցների արտադրությունը պետք է աճի մոտավորապես 80 տոկոսով և սպառման առարկաների արտադրությունը՝ մոտավորապես 65 տոկոսով։ Այդ նշանակում է, որ հնգամյակի վերջում արդյունաբերական արտադրանքի ծավալը, 1940 թվականի համեմատությամբ, ավելանալու է երեք անգամ։

Ժողովրդական տնտեսության շահերը և սովետական ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման խնդիրները պահանջում են է՛լ ավելի մեծ չափով ավելացնել գյուղատնտեսական արտադրանքի արտադրությունը։ Հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ համագումարի դիրեկտիվներում նախատեսվում է հնգամյակի ընթացքում ավելացնել հացահատիկի համախառն բերքը 40—50 տոկոսով, այդ թվում ցորենինը՝ 55—65 տոկոսով, բամբակի հումքինը՝ 55—65 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 65—70 տոկոսով, կարտոֆիլինը՝ 40—45 տոկոսով և այլն։

Կենսագործելով մեծ առաջնորդ և ուսուցիչ Ի. Վ. Ստալինի կանխագծումները, Սովետական Միության Կոմունիստական պարտիան ամեն կերպ հոգ է տանում մեր սոցիալիստական Հայրենիքի էկոնոմիկական

ու պաշտպանական հզորության ամրապնդման մասին, սովետական ժողովրդի ընդհանուր բարեկեցության անընդհատ վերելքի մասին։

Սովետական մարդիկ՝ խոր հավատով լի դեպի լենինյան-ստալինյան իդեաների հաղթանակը, կրկնապատկած եռանդով պայքարում են ստալինյան հինգերորդ հնգամյա պլանի կենսագործման համար, որը նոր խոշոր առաջընթաց քայլ կհանդիսանա սոցիալիզմից դեպի կոմունիզմ տանող ճանապարհին։

Մեծ առաջնորդ Ի. Վ. Ստալինի դագաղի մոտ արտասանած իրենց ճառերում նրա հավատարիմ աշակերտներ ու զինակիցներ ընկ. ընկ. Գ. Մ. Մալենկովը, Լ. Պ. Բերիան և Վ. Մ. Մոլոտովը շարադրեցին մեր պարտիայի և կառավարության ներքին ու արտաքին քաղաքականության հիմունքները, կոչ արեցին սովետական մարդկանց բազմապատկել իրենց ջանքերը՝ կենսագործելու այն հսկայական խնդիրները, որոնք կանգնած են սովետական ժողովրդի առաջ։

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները, ինչպես և Սովետական Միության բոլոր ժողովուրդները, պարտիայի և կառավարության



կոչին պատասխանում են աշխատանքային նոր հաջողություններով։

Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում լայնորեն ծավալվել է սոցիալիստական մրցությունը նոր հնգամյակի երրորդ տարվա պլանները ժամկետից շուտ և որակական բարձր ցուցանիշներով կատարելու համար։

Այս օրերին անձնուրաց պայքարում է Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը, որը մարտ ամսվա պլանը կատարել է 106 տոկոսով, անտեսելով 130 տոննա հիմնական հումք։

Մտնելով սոցիալիստական մրցության մեջ ինժեներ Բ. Մուրադյանի ղեկավարած ցեխը մարտ ամսվա արտադրական պլանը կատարեց ամսի 23-ին, իսկ ինժեներ Ռ. Շահվերդյանի ղեկավարած ցեխը՝ մարտի 25-ին։

Ստանձնած պարտավորությունները պատվով են կատարում «Ավտոդետալ», Ավտոդողերի, Կաբելի, Էլեկտրամեխանիկական և ուրիշ գործարանների կոլեկտիվները։

Աշխատանքային մեծ խանդավառություն են ապրում կոլտնտեսային գյուղի աշխատավորները, որոնք ծավալել են սոցիալիստական լայն մրցություն գարնանացանը սեղմ ժամկետում և բարձր որակով ավարտելու,

ստալինյան հնգամյակի երրորդ տարվա պետական պլանները կատարելու համար, խորը գիտակցելով, որ գարնանացանը ժամանակին և բարձր որակով կատարելը հանդիսանում է բերքատվության պլանների կատարման հիմնական պայմաններից մեկը։

Մրցելով իրար հետ Շամշադինի շրջանի կոլտնտեսությունները հաջողությամբ նախապատրաստվում են գարնանացանին։ Շրջանի կոլտնտեսությունների զգալի մասը արդեն ավարտել են գյուղատնտեսական մանր գործիքների վերանորոգումը և դաշտ են տեղափոխել տեղական պարարտանյութը։

Կրկնապատկված եռանդով են աշխատում Ախուրյանի, Կոտայքի, Բասարգեչարի ՄՏԿ-ների մեխանիզատորները, որոնք ռեսպուբլիկայում առաջինն էին, որ վերջացրին տրակտորների, գյուղատնտեսական մեքենաների և կցվող գործիքների վերանորոգումը։

Սովետական ժողովուրդը ջերմ հավանությամբ ընդունեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի չորրորդ սեսիայի որոշումները։

Պետական և տնտեսական ղեկավարումը բարելավելու ասպարեզում ՍՍՌՄ Գերագույն Սովետի չորրորդ սեսիայի հաստատած կազմակերպական միջոցառումների կենսագործումը անկասկած կստեղծի լավագույն պայ-



մաններ մեր երկրի առջև կանգնած պատմական խնդիրները՝ մեր բազմազգ սոցիալիստական պետության հետագա ամրապնդման, սոցիալիստական արդյունաբերության հետագա զարգացման, կոլտնտեսային կարգի ամրապնդման, կուլտուրայի զարգացման, բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի նյութական բարեկեցության բարձրացման խնդիրները հաջողությամբ լուծելու, մեր երկրում կոմունիստական հասարակարգի կառուցումը ապահովելու համար։

Սովետական ժողովուրդը քաջ գիտե, որ Լենինի—Ստալինի անպարտելի դրոշը գտնվում է մեծ Ստալինի հավատարիմ զինակիցների ձեռքերում, որոնք նրա հետ միասին գլխավորել են սոցիալիզմի կառուցման պատմական գործը։ Ուստի, հրաժեշտ տալով իր մեծ ուսուցիչ և առաջնորդ ընկեր Ստալինին, սովետական ժողովուրդը վստահորեն է նայում դեպի առաջ, քաջ գիտակցելով, որ Լենինի և Ստալինի ստեղծած Սովետական Միության Կոմունիստական պարտիան մեր ժողովրդին կտանի դեպի նոր հաղթանակներ կոմունիզմի կառուցման գործում։

Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

# ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ՄԱՍՍԱՆԵՐԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԶԳՈՆՈՒԹՅՈՒՆԸ

*Սովետական ժողովուրդը սրբությամբ կենսագործում է մեծ Ստալինի պատգամները, անդուլ կերպով պայքարում է Սովետական պետության ամրապնդման համար, քաջ գիտակցելով, որ մեր պետության ամրությունն ու հզորությունը մեր երկրում կոմունիզմի հաջող կառուցման կարևորագույն պայմանն են հանդիսանում։*

*Սովետական երկրի ռազմա-տնտեսական հզորությունն ամրապնդելու, ներքին և արտաքին թշնամիներին մերկացնելու և ջախջախելու գործում խոշորագույն նշանակություն ունի մասսաների քաղաքական զգոնության բարձրացումը։*

*Որքան մեծ են մեր հաջողությունները, այնքան ավելի են գազազում կոմունիզմի թշնամիները։ Ուստի պատահական չէ, որ նրանք դիմում են ամենաստոր միջոցների, ամենանենգ դավեր են նյութում ՍՍՌՄ-ի և ժողովրդական դեմոկրատիայի երկրների*



*դեմ, ձգտելով վնասել մեզ, խանգարել մեր առաջընթացը։*

*Ամերիկյան իմպերիալիզմը և նրա վասալ իմպերիալիստական տերությունները, որոնք հանդիսանում են ամենառեակցիոն ուժը աշխարհում, պարբերաբար դիվերսիոն-լրտեսական ակտեր են կատարում Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրներում, ուղարկելով լրտեսներ, վնասարարներ, դիվերսանտներ և մարդասպաններ։ Անգամ ամերիկյան բուրժուական մամուլը՝ ԱՄՆ-ի առևտրական պալատի օրգան «Նեյշնս Բիզնես» թերթը գրում է, որ իրենք պատրաստում են լրտեսներ, դիվերսանտներ, սովորեցնում են նրանց ինչպես թափանցել ռուսական ձեռնարկությունները, ինչպես պայթեցնել կամուրջներ, երկաթուղային կայարաններ և ռազմական գործարաններ։*

*Համաշխարհային տիրապետության խելացնոր հավակնորդ ամերիկյան իմպերիալիստները դիմում են ամեն տեսակ ստոր միջոցների և ամեն ինչ ենթարկում են նոր համաշխարհային պատերազմի նախապատրաստմանը։ Այդ միջոցառումների թվում են նաև լրտեսությունը, դիվերսիան, վնասարարությունը։*

Պարզ է, որ չարաչար սխալվում են նրանք, ովքեր կարծում են, թե համաշխարհային երկրորդ պատերազմի հետևանքով կապիտալիզմի սիստեմից նոր երկրների անջատումը նշանակում է կապիտալիստական շրջապատման վերացում կամ այդ շրջապատման վտանգի թուլացում:

Համաշխարհային երկրորդ պատերազմի հետևանքով Սովետական Միության սահմանների մոտ ժողովրդական դեմոկրատիայի երկրների, Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի, Չինական ժողովրդական ռեսպուբլիկայի, Կորեայի ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկայի հանդես գալը ուժգին հարված հասցրեց իմպերիալիզմի լագերին, ուժեղացրեց խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի լագերը, բայց կապիտալիստական շրջապատումը չվերացվեց: Կապիտալիստական շրջապատումը գոյություն ունի և ակտիվորեն գործում է:

Ընկեր Ստալինը սովորեցնում է, «...որ քանի գոյություն ունի կապիտալիստական շրջապատումը, մեզանում գոյություն են ունենալու վնասարարներ, լրտեսներ, դիվերսանտներ ու մարդասպաններ, որոնց մեր



թիկունքները են ուղարկում օտարերկրյա պետությունների գործակալները»:

Սովետական յուրաքանչյուր քաղաքացի մշտապես պետք է հիշի մեծ առաջնորդի իմաստուն ցուցումը և լինի զգոն, անողոքաբար պայքարի բերանբացության, բարեհոգության ու անհոգության ամեն տեսակ երևույթների դեմ:

Սովետական ժողովրդի ձեռք բերած խոշոր պատմական նվաճումները քաղաքականապես ոչ հասուն մարդկանց մեջ առաջ են բերել բարեհոգության, անհոգության տրամադրություններ և քաղաքական զգոնության բթացում: Նրանք մոռանում են, որ շահագործող դասակարգերի վերացումը չի նշանակում, թե մեր երկրում իսպառ վերացել են թշնամական տարրերը: Շահագործող դասակարգերի, ինչպես նաև բուրժուա-նացիոնալիստական պարտիաների մնացուկները, քողարկված տարբեր դիմակներով, մինչև հիմա մնացել են և գործում են:

Քաղաքական զգոնությունը կորցրած մարդիկ մոռանում են, որ իմպերիալիզմի հետախույզները ամեն կերպ ձգտում են իրենց կեղտոտ նպատակների համար օգտագործել ոչ միայն սովետական ժողովրդի այդ թաք-

նված թշնամիներին, այլև բարոյապես անկայուն, այլասերված, հակահասարակական կյանք վարող մարդկանց։ Մեր երկրի թաքնված թշնամիներն ստանալով իմպերիալիստական աշխարհի աջակցությունը և օգտվելով որոշ մարդկանց անհոգությունից, բարեհոգությունից և բերանբացությունից, մեզ վնասել են և կվնասեն այսուհետև էլ, եթե մենք զգոն չլինենք։

Մեր մեծ առաջնորդներ Լենինը և Ստալինը պարտիային ու սովետական ժողովրդին սովորեցնում էին անդուլ կերպով բարձրացնել և սրել պարտիայի զգոնությունը Սովետական պետության թշնամիների նկատմամբ։ «Մենք պետք է աչքի լույսի պես պահպանենք պարտիայի միասնությունը, է՛լ ավելի ամրապնդենք պարտիայի անխզելի կապերը ժողովրդի հետ, կոմունիստներին ու բոլոր աշխատավորներին դաստիարակենք քաղաքական բարձր զգոնության ոգով, ներքին և արտաքին թշնամիների դեմ մղվող պայքարում անհաշտության և հաստատակամության ոգով» (Գ. Մալենկով)։

Մասսաների քաղաքական զգոնությունը բարձրացնելու, բերանբացության, անհոգության և պարադայնության դեմ պայքա-



րելու գործում մեծ անելիքներ ունեն ագիտատորները։ Ագիտատորների խնդիրն է՝ աշխատավոր լայն մասսաներին դաստիարակել քաղաքական բարձր զգոնության ոգով, մոբիլիզացնել նրանց՝ անհոգության, բարեհոգության և բերանբացության դեմ անողոք պայքար մղելու համար։

Մասսաների քաղաքական զգոնության բարձրացման կարևոր պայման է բնակչության մեջ իդեոլոգիական աշխատանքի հետագա ուժեղացումը։ Պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ ագիտատորները պետք է բարձրացնեն աշխատավորների մեջ տարվող քաղաքական աշխատանքի գաղափարական մակարդակը, նրանց անդուլ կերպով զինեն մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ թեորիայով, դաստիարակեն թերությունների և սխալների հանդեպ անհաշտության ոգով։

Ագիտատորները իրենց զրույցները պետք է նվիրեն Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարի նյութերի և ընկեր Ստալինի «Սոցիալիզմի էկոնոմիկական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» կլասիկ աշխատության պարզաբանմանը, այն դարձնելով աշխատավոր լայն մասսաների սեփականությունը։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքի միջոցով աշխատավորությանը պետք է պարզաբանեն, որ սոցիալիզմի և դեմոկրատիայի լագերի հաղթանակի երաշխիքը մեր պետության պաշտպանության հզորացումն է, ստալինյան նոր հնգամյա պլանի կատարումն ու գերակատարումն է։

Ագիտատորները մասսաների գիտակցությանը պետք է հասցնեն, որ ռևոլյուցիոն բարձր զգոնությունը սովետական ամեն մի քաղաքացու հայրենասիրական պարտքն է, որովհետև եթե մենք ազատվենք այնպիսի հիվանդագին երևույթներից, ինչպիսին են բերանբացությունը, անհոգությունը և բարեհոգությունը մեր շարքերում, ապա, ինչպես ընկեր Ստալինն է ասել. «...մեզ համար սարսափելի չէ ո՛չ մի թշնամի, ո՛չ ներքին, ո՛չ արտաքին, մեզ համար սարսափելի չեն նրանց ոտնձգությունները, որովհետև մենք ապագայում նրանց կջախջախենք նույնպես, ինչպես ջախջախում ենք նրանց այժմ, ինչպես նրանց ջախջախել ենք անցյալում»։

Բարեհոգության, անհոգության, բերանբացության դեմ մղվող պայքարում փորձված միջոց է հանդիսանում քննադատությունն ու ինքնաքննադատությունը, որը



բարձրացնում է սովետական մարդկանց զգոնությունը։ Դաստիարակելով մասսաներին քննադատության և ինքնաքննադատության ոգով, ագիտատորները աշխատավորության ուշադրությունը պետք է բևեռեն թերություններն ամենաարագ կերպով վերացնելու վրա։

Սովետական ժողովուրդը հաստատ համոզված է, որ «Աշխարհում չկան այնպիսի ուժեր, որոնք կարողանան կանգնեցնել սովետական հասարակության հաղթական առաջընթացը դեպի կոմունիզմ»։ Կոմունիզմի կառուցման հոյակապ խնդիրները է՛լ ավելի հաջողությամբ լուծելու համար մասսաներին պետք է դաստիարակել ռևոլյուցիոն բարձր զգոնության ոգով և վերջ տալ անհոգությանը, բարեհոգությանը և բերանբացությանը մեր շարքերում։

Այժմ, երբ այլևս մեզ հետ չէ ժողովուրդների սիրելի առաջնորդ մեծ Ստալինը, սովետական ժողովուրդը իր անհուն վիշտն ու կսկիծը վեր է ածում ուժի, է՛լ ավելի կուռ շարքերով է համախմբվում հարազատ կոմունիստական պարտիայի շուրջը և իր ամբողջ ուժերը նվիրաբերում է Լենինի—Ստալինի մեծ գործի, կոմունիզմի կառուցման համար։

Ա. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

# ԲՆՈՒԹՅԱՆ ՎԵՐԱՓՈԽՄԱՆ ՍՏԱԼԻՆՅԱՆ ՄԵԾ ՊԼԱՆԻ ԿԵՆՍԱԳՈՐԾՈՒՄԸ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ-ՈՒՄ

Սովետական ժողովուրդը Լենինի—Ստալինի պարտիայի իմաստուն ղեկավարությամբ իրականացնում է կոմունիզմի նյութական բազայի ստեղծման հոյակապ ծրագիրը։ Այդ վիթխարի աշխատանքների մեջ նշանավոր տեղ է գրավում բնության վերափոխման ստալինյան հոյակապ պլանը։

Պարտիայի 19-րդ համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ ընկ. Գ. Մ. Մալենկովը, ամփոփելով բնության վերափոխման ստալինյան պլանի կատարումն, ասաց՝ «1948 թվականից մեծ աշխատանքներ են կատարվում ՍՍՌՄ եվրոպական մասի տափաստանային և անտառատափաստանային շրջաններում պետական դաշտապաշտպան խոշոր անտառաշերտեր, կոլտնտեսություններում և սովխոզներում դաշտապաշտպան անտառաշերտեր ստեղծելու, լճակներ և ջրամբարներ կառուցելու ուղղությամբ։ Վերջին երեք և կես տարվա ընթացքում կոլ-



տնտեսությունները, սովխոզները և անտառային տնտեսությունները դաշտապաշտպան անտառաշերտեր են տնկել 2,6 միլիոն հեկտար տարածության վրա և կառուցել 12 հազարից ավելի լճակներ և ջրամբարներ»։

Բնության վերափոխման պլանի իրագործումն արմատական լուծում է ստանում նաև Վոլգայի, Դոնի, Դնեպրի և Ամու-Դարյայի վրա վիթխարի հիդրոէլեկտրակայանների ու ոռոգիչ սիստեմների կառուցման և Վլադիմիր Իլյիչ Լենինի անվան Վոլգա—Դոն նավարկելի ջրանցքի գործարկման կապակցությամբ։

Հիդրոէլեկտրակայանների կառուցման շնորհիվ առաջիկա 4 տարվա ընթացքում հիմնովին կլուծվի գյուղատնտեսական աշխատանքների զգալի մասի էլեկտրիֆիկացման պրոբլեմը և լիովին կապահովվի մեր երկրի կարևորագույն շրջանների գյուղատնտեսության էլեկտրաէներգիայի պահանջը։

Բնության վերափոխման ստալինյան պլանի իրականացման ուղղությամբ զգալի աշխատանքներ է կատարվում նաև Սովետական Հայաստանում։ Անցած չորս տարիների ընթացքում անտառային ֆոնդի տարածությունները ընդարձակվել են ավելի քան 10 հազար հեկտարով։ Անտառատնկումները

ավելի մեծ մասշտաբներով կատարվելու են նաև հինգերորդ հնգամյակում։ 1951—1955 թվականների ընթացքում անտառային ֆոնդի տարածությունները ռեսպուբլիկայում կընդարձակվեն 15 հազար հեկտարով։

1950 թվականից Սևանում կազմակերպված է անտառապաշտպան կայան և պետական անտառային տնկարան, որոնք հագեցված են ժամանակակից մեքենաներով։ Սևանի անտառապաշտպան կայանի հիմնական խնդիրն է անտառապատել Սևանա լճի ցամաքող տարածությունները։ Սահմանված պլանով, մինչև 1960 թվականը Սևանա լճի շրջակայքում անտառատնկումներ կկատարվի 10 հազար հեկտար տարածության վրա, որը հետագայում կհասնի 20 հազար հեկտարի։ Անցած երկու տարիներում կատարվել են 1000 հեկտար անտառատնկումներ, նույնքան տարածություն էլ կանտառապատվի 1953 թ.։ Սևանա լճի շուրջը ստեղծվող անտառաշերտը մեծ չափով կնպաստի շրջակա կոլտնտեսությունների գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացմանը և պտղաբուծության զարգացմանը։ Անտառատնկումներ է կատարվում նաև ռեսպուբլիկայի կուրորտների և արդյունաբերական կենտրոնների շրջակայքում։



Բնության վերափոխման ստալինյան պլանի համաձայն խոշոր աշխատանքներ են կատարված մեր ռեսպուբլիկայի մայրաքաղաք Երևանի շուրջը կանաչ անտառային գոտիներ ստեղծելու ուղղությամբ։ Քաղաքի շուրջը գտնվող սարալանջերում կատարվել են ավելի քան 1000 հեկտար անտառատնկումներ, որից 1952 թվականին 402 հեկտար։ Ագրոանտառամելիորատիվ միջոցառումների ճիշտ կիրառման շնորհիվ՝ 1951—1952 թվականներին տնկված 750 հեկտար տարածության վրա ծառատունկերի կպչողականությունը կազմում է 92 տոկոս, Երևանի անտառտնտեսությունը երկրորդ տարին է, որ իր ձեռքին պահում է Հայկական ՍՍՌ Անտառային տնտեսության մինիստրության փոխանցիկ դրոշը։ Առաջիկա երկու տարում քաղաքի շուրջը կանաչ անտառային գոտիներ ստեղծելու աշխատանքներն ավարտելուց հետո, Երևանի անտառտնտեսությունը կընկլսի Գետառի սարալանջերի անտառատնկումները՝ 1600 հեկտար տարածության վրա։

Քաղաքի շուրջը ստեղծվող կանաչ անտառային գոտիները կմեղմացնեն քաղաքի կլիման, կարգելակեն դրսից դեպի քաղաք թափանցող փոշիների մուտքը և քաղաքի օդը կդարձնեն առողջարար։

Արզնի կուրորտի շուրջը տնկվել են 150
հեկտար անտառներ: Անցյալ տարվանից
սկսված է Ազիզբեկովի շրջանում գտնվող
միութենական նշանակություն ունեցող Ջեր-
մուկ սանատորիայի շրջակայքի սարալան-
ջերի անտառապատումը մշտադալար ծառե-
րով: Դիլիջան քաղաքի շուրջը տնկված է
100 հեկտար սոճի: Անտառատնկումներ է
կատարվում նաև Ծաղկաձորում, Կիրովակա-
նի, Ալավերդու և Ղափանի շրջակայքի սա-
րալանջերում:

Բացի անտառային ֆոնդի տարածություն-
ների ընդարձակումից, զգալի աշխատանք-
ներ են կատարվել նաև կոլտնտեսային
դաշտապաշտպան անտառաշերտեր ստեղծե-
լու ուղղությամբ: 1949—1952 թվականներին
տնկված են 1500 հեկտար դաշտապաշտ-
պան անտառաշերտեր: Անտառաշերտերը
տնկվել են՝ Վեդու, Հոկտեմբերյանի, Էջմիա-
ծնի, Աշտարակի, Թալինի, Ախուրյանի,
Ն. Բայազետի և Մարտունու շրջաններում:

Կառավարության կողմից հաստատված
պլանի համաձայն՝ Հայաստանում պետք է
ստեղծվեն դաշտապաշտպան 6 անտառա-
շերտ, որոնք տնկվելու են ինչպես բերքառատ
սևահողային շրջաններում, այնպես էլ կի-
սաանապատային գորշ հողերում և ջրանցք-



ներին կից տերիտորիաներում: Պետական
պաշտպանական անտառաշերտերը տնկվե-
լու են Անտառային տնտեսության մինիստ-
րության միջոցով: Անտառաշերտերի ընդհա-
նուր երկարությունը նախատեսվում է 257
կիլոմետր, իսկ դրանց գրաված տարածու-
թյունը՝ 1811 հեկտար:

Իր երկարությամբ ամենամեծ և նշանա-
կությամբ խիստ կարևոր անտառաշերտերից
մեկը ստեղծվելու է Արարատյան դաշտում,
որը սկիզբ է առնելու Նախիջևանի ավտոնոմ
ռեսպուբլիկայի սահմանից և անցնելու է
Վեդու, Ջանգիբասարի և Էջմիածնի շրջան-
ներով: Այդ անտառաշերտի շարունակությու-
նը կազմելու է Հոկտեմբերյանի անտառա-
շերտը, որը հասնելու է Արագածի երկաթու-
ղային կայարանը և ապա՝ Թալինի ջրանցքը:
Այս երկու անտառաշերտի երկարությունը
լինելու է 150 կիլոմետր, լայնությունը՝ 50
մետր: Շերտերը բռնելու են 750 հեկտար
տարածություն: Այս անտառաշերտերը պատ-
վար կհանդիսանան հարավից և հարավ-
արևելքից փչող խորշակների դեմ և Արա-
րատյան դաշտում կվերացնեն երաշտի վնա-
սաբեր ազդեցությունը:

Երրորդ անտառաշերտը նախատեսվում է
անցկացնել Աշտարակի շրջանում: Այդ շեր-

որն սկիզբ է առնելու Կոտայքի շրջանի Էլար գյուղի մոտից, անցնելու է Եղվարդ գյուղի դաշտերով, Աշտարակի շրջկենտրոնով, ձգվելու է Թալին գնացող խճուղու ուղղությամբ, անցնելու է Շամիրամ գյուղն մոտով և հասնելու է Թալինի շրջանի Կարմրաշեն գյուղը: Անտառաշերտի երկարությունը լինելու է 55 կիլոմետր, լայնությունը՝ 50 մետր, ընդհանուր տարածությունը՝ 275 հեկտար:

Չորրորդը՝ Սևուրյանի անտառաշերտն է, որ ստեղծվելու է Շիրակի ջրանցքի ուղղությամբ: Այս անտառաշերտը ուժեղ քամիներից պաշտպանելու է Շիրակի դաշտի հացահատիկային կուլտուրաների և ճակնդեղի ցանքերը:

Հինգերորդը՝ Արա լեռան անտառաշերտն է, որն սկիզբ կառնի Ապարանի շրջանի Նիկատուն գյուղից, կանցնի Ափնա գյուղի մոտով, կտրելով Քասախ գետը և կհասնի Բուժական:

Վեցերորդ անտառաշերտն սկիզբ է առնելու Կալինինոյի շրջանից և հասնելու է Ստեփանավանի շրջանի Կույբիշև գյուղը: Շերտի երկարությունը լինելու է 25 կիլոմետր, լայնությունը՝ 150 մետր, ընդհանուր տարածությունը՝ 375 հեկտար: Այս



անտառաշերտը հացահատիկային կուլտուրաների ցանքերը կպաշտպանի ուժեղ քամիներից և նպաստավոր պայմաններ կստեղծի բերքատվության բարձրացման համար:

Բնության վերափոխման մյուս ձեռնարկումը սարալանջերի էրոզիայի դեմ մղվող պայքարն է, որը մեր ռեսպուբլիկայի համար կարևոր նշանակություն ունի: Ռեսպուբլիկայի 16 շրջաններում ավարտված են սարալանջերի ողողումների դեմ տարվող պայքարի հետազոտման աշխատանքները: Կատարված հետազոտումների հիման վրա կըմշակվի Սևանա լճի շուրջը գտնվող սարալանջերի՝ Ծաղկաձորի, Համզաչիմանի, ինչպես նաև Գետառի սարալանջերի անտառատնկումների տեխնիկական նախագծումները:

Ջրային տնտեսության մինիստրության գծով մեծ աշխատանք է կատարվելու Արարատյան դաշտավայրի հողերի ցամաքեցման և ոռոգման ուղղությամբ: Կառուցվում է Թալինի ջրանցքը, ինչպես նաև ջրանցքներ և ոռոգման սիստեմներ կոլտնտեսությունների գծով: Կառավարության դիրեկտիվի համաձայն հերկի տարածությունը պետք է ընդարձակվի 150 հազար հեկտարով, որից 53 հազարը պետք է հերկվի նոր ոռոգվող հողերում:

Բնության վերափոխման ստալինյան պլանը, որը հաջողությամբ իրագործվում է, ցույց է տալիս տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունները, Սովետական պետության հզորությունը և կոլտնտեսային կարգերի ուժի կենսունակությունը: Միայն սոցիալիստական իրավակարգի պայմաններում է, որ այդպիսի մեծ մասշտաբով աշխատանքներ է կատարվում բնությունը վերափոխելու ուղղությամբ: ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվներով նախատեսվում է. «Ապահովել տափաստանային և անտառատափաստանային շրջաններում դաշտապաշտպան անտառատնկման աշխատանքների հետագա ընդլայնումը, հողի էրոզիայի դեմ պայքարելու, ինչպես նաև ավազուտները անտառապատելու ուղղությամբ ագրոանտառամելիորատիվ միջոցառումների կիրառումը, տնտեսական նշանակություն ունեցող անտառների ստեղծումը, ինչպես նաև քաղաքների ու արդյունաբերական կենտրոնների շուրջը, գետերի, ջրանցքների և ջրամբարների ափերին կանաչ գոտիներ ստեղծումը:

Հնգամյակի ընթացքում կոլտնտեսություններում ու սովխոզներում տնկել առնվազն



2,5 միլիոն հեկտար պաշտպանական անտառներ և կատարել մոտ 2,5 միլիոն հեկտար պետական անտառների ցանք ու տնկում»:

Մարդկության պատմության մեջ իր խորությամբ ու ծավալով նմանը չունեցող այս պլանի իրագործումը կպահանջի կոլտնտեսականների, սովխոզների և անտառային տնտեսությունների բանվորների մեծ ջանքեր:

Այդ պլանի իրականացման շնորհիվ վերջ կտրվի երաշտի սպառնալիքին, սոցիալիստական դաշտերը կծաղկեն և հարուստ բերք կտան եղանակի բոլոր պայմաններում:

Պարտիական և սովետական բոլոր կազմակերպությունների հիմնական խնդիրն է, մոբիլիզացնել կոլտնտեսականներին և անտառային տնտեսության աշխատողներին բնության վերափոխման հինգերորդ հնգամյա պլանի միջոցառումները կենսագործելու համար: Այդ գործում մեծ անելիքներ ունեն նաև ագիտատորները, որոնք օգտագործելով ագիտացիայի և պրոպագանդայի բոլոր միջոցները, բնակչությանը պետք է պարզաբանեն բարձր և կայուն բերք ապահովելու համար մղվող պայքարում բնության վերափոխման ստալինյան մեծ պլանի նշանակությունը:

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

# ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒՄ ԵՆ ՄԱՐԴԱՍՊԱՆՆԵՐ ԵՎ ԹԱԼԱՆՉԻՆԵՐ

Ձգտելով համաշխարհային նոր պատերազմի հրահրմանը, ամերիկյան կապիտալի պարագլուխները այդ հանցավոր նպատակին են ենթարկում Ամերիկայի Միացյալ Նահանգների բնակչության ամբողջ կյանքը, ամբողջ կենցաղը։ Երկրում ոչնչացվում են բուրժուա-դեմոկրատական ազատությունների վերջին մնացորդները։ Հալածանքների են ենթարկվում Ամերիկայի բոլոր այն առաջավոր մարդիկ, որոնք հանդես են գալիս ի պաշտպանություն խաղաղության, ընդդեմ ԱՄՆ-ի իմպերիալիստների զավթողական պլանների։

Ամերիկյան ժողովրդին իրենց ձեռքում հլու գործիք դարձնելու համար պատերազմի հրձիգները գործի են դնում իդեոլոգիական ներգործության բոլոր միջոցները։ Գրականությունը, կինոն, մամուլը, ռադիոն, դպրոցը, սպորտը և այլն օգտագործվում են ժողովրդին համապատասխան մշակման ենթարկելու, բնակչության քաղաքականապես հետամնաց և սակավ կուլտուրական խավերին բթացնելու համար։ Աշխատավորների, հատկապես երիտասարդության գիտակցությունը թունավորվում է պատերազմի պրո-



պագանդայի և դեպի մյուս ժողովուրդներն ու ռասաները տածվող ատելության թույնով։

Արմատավորելով միլիտարիզմի և ֆաշիզմի ոգին, ԱՄՆ-ի կառավարող շրջանները երկրի դպրոցները և բարձրագույն ուսումնական հաստատությունները վերածում են զորանոցների։ Պենտագոնը— ամերիկյան ռազմական տեսչությունը— պահանջում է, որ դպրոցները տան թալանչիական պատերազմ մղելու համար հատկապես վարժեցրած զինվորներ։ Դպրոցների լիակատար միլիտարիզացման այդ ծրագրի մասին բացե ի բաց գրել է ԱՄՆ-ի «մանկավարժական» ժուռնալներից մեկը՝ «Նեյշնլ պարենտ-տիչեր»-ը։ Ժուռնալը իր «Պենտագոնը պլանավորում է ձեր զավակի ապագան» հոդվածում պահանջում է, որպեսզի ծնողները հաշտվեն այն մտքի հետ, որ նրանց երեխաները պետք է դառնան մարդասպան զինվորներ։ «Միակ բանը, որի կարիքն զգում է երկիրը, այդ մարդիկ են, որոնք կսպանեն ուրիշներին, որպեսզի իրենք ապրեն»։ «Մեզ հարկավոր են,— ասվում է հոդվածում այնուհետև,— մարդասպաններ և ուրիշ ոչինչ»։ Մարդասպանները ամենից ավելի լավ ստեղծվում են ոչ թե ամուսնացած, երեխա ունեցող տղամարդկանցից, ոչ թե քսանհինգ տարեկանից բարձր մարդկանցից, այլ՝ տասնութամյա պատանիներից։ Ահա թե ինչու Պենտագոնը ինչպես էլ լինի ուզում է բանակ զորակոչել 18 տարեկաններին»։

Ներկայումս երկրի կոլեջների և համալսարանների

ուսումնական ծրագրերում կենտրոնական տեղ է գրավում ռազմական պատրաստությունը։ Նրա ընդլայնման համար կրճատվում է գիտական առարկաների դասավանդումը։ Պարդյուի համալսարանի (Ինդիանի նահանգ) հաշվետվության մեջ ուղղակի կերպով նշվում է, որ զինվորական շրջանները ամերիկյան համալսարանները դարձնում են «տոտալ (համապարփակ,— Վ. Լ.) պատերազմի բռնկմանը հարմարեցված մի մեքենա»։

ԱՄՆ-ի քաղաքային և գյուղական շատ դպրոցներում մտցված է «վարժությունների» մի ամբողջ դասընթաց՝ ատոմային տագնապի դեպքի համար։ Նյու-Յորքի նահանգի կրթության դեպարտամենտը հրապարակել է մի հատուկ հրահանգ, որի մեջ խորհուրդ է տրվում ատոմային տագնապներն անցկացնել... «դրամատիկական ներկայացման» ձևով։ Հրահանգում նշվում է, թե ատոմային վարժությունները «ամենօրյա հաճելի, բնական զբաղմունք պետք է դառնան երեխաների համար..., ինչպես ամեն օր ատամ մաքրելու սովորությունը»։

Ամերիկյան դպրոցների վերածումը ռազմական մեքենայի կցորդի՝ է՛լ ավելի է գցում երեխաների ուսուցման առանց այն էլ խիստ ցածր որակը։ Ամերիկյան 16-ամյա դպրոցականների մեջ անցկացված հարցումը ցույց տվեց, որ նրանցից շատերը չգիտեն, թե ժամանակը ինչպես պետք է որոշել ժամացույցով։ Հարցման ենթարկված 11 հազար հոգուց յուրաքան-



չյուր հինգերորդը չգիտեր, թե տարին քանի ամիս ունի։ Մոտ հազար դեռահասներ չկարողացան 70-ը բաժանել 2-ի։

Դպրոցների ծանր վիճակը և աշակերտների ապշեցուցիչ անգրագիտությունը հարկադրված են խոստովանել ԱՄՆ-ի անգամ լուսավորության սիստեմի պաշտոնական գործիչները։ Իելսկի համալսարանի պրեզիդենտ Գրիսուոլդը հայտարարել է, թե ԱՄՆ-ի դպրոցները և բարձրագույն ուսումնական հաստատությունները տալիս են «բարբարոսներ, նման նրանց, որոնք Եվրոպան նետեցին միջնադարյան մռայլ ժամանակաշրջանը»։ Ռասսայականության, պատերազմի, ավազակության պրոպագանդան դարձել է ուսումնական ծրագրերի անբաժանելի բաղկացուցիչ մասը։

Դպրոցի հետ միասին ամերիկյան երիտասարդության այլասերման ու պղծման «աշխատանք» է տանում եկեղեցին։ Տամպա քաղաքի (Ֆլորիդա նահանգ) համալսարանի ռեկտոր, քահանա Նենսը հայտարարել է իր ունկնդիրներին. «Նրանից հետո, երբ ես իմ հոտը աղոթարան կտանեմ, ես նրան կհրավիրեմ հրաձգարան՝ հրաձգության վարժեցնելու։ Ես գտնում եմ, որ մենք պետք է անցկացնենք տոտալ պատրաստություն, հենվելով ջունգլիների օրենքի վրա։ Մենք պետք է սովորենք մարդասպանության արվեստը»։

Ամերիկյան ռազմամոլները այն կարծիքին են, թե անհրաժեշտ է երեխաներին պատվաստել մարդա-

սպանների և թալանչիների «հատկությունները» դեռ նախադպրոցական հասակից սկսած։ Դեռ դպրոց չհաճախող մանուկները,— դատողություններ է անում «Նեյշնլ պարենտ-տիչեր» ժուռնալը,— երբ մեծանան զինվորական համազգեստ են հագնելու, ուստի անհրաժեշտ է, որ ծնողներն իրենք ամեն կերպ նպաստեն դպրոցների միլիտարիզացմանը։ «Եթե դուք տեսնում եք,— սովորեցնում է ամերիկյան ճիվաղ հոգեբան Կերտ Ֆենտըը,— որ ձեր երեխաները, պատերազմ խաղալով, ձևացնում են, թե ատոմային ռումբ են նետում, դուք պետք է խրախուսեք նրանց։ Թերևս դա ձեզ վայրենություն և անգթություն թվա, բայց դուք սխալ եք»։

Ամերիկյան իմպերիալիստները մինչև անգամ օգտագործում են խաղալիքները՝ երեխաների մեջ ամենաստոր բնազդներ պատվաստելու համար։ Ամերիկյան խանութներում վաճառվող խաղալիքները պատկերացնում են բռնության և մարդասպանության ամեն ձևի ու տեսակի գործիքներ՝ սկսած հասարակ ատրճանակից, պողպատյա ձեռնաշղթայից և վերջացրած խաղալիքային ատոմային ռումբով։

ԱՄՆ-ի մատաղ սերնդի վրա առանձնապես ապականող ազդեցություն են գործում «կոմիկս» նկարների սերիաները, որոնց գլխավոր հերոսները մարդասպաններն են, թալանչիները և բռնադատիչները։ Այդ նողկալի գրքույկները հրատարակվում են հսկայական, գնալով ավելի մեծ տիրաժներով։ 1940



թվականին դրանք լույս են ընծայվել 120 միլիոն օրինակ տիրաժով, իսկ այժմ արդեն հրատարակվում են տարեկան ավելի քան մեկ միլիարդ տիրաժով։ Ինչպես նշում է ֆրանսիական գրող Վ. Պոզները, ամերիկյան յուրաքանչյուր երեք ընտանիքից երկուսը որևէ այլ բան չի կարդում, բացի «կոմիկսներից»։

«Մարդ որսողներ», «Սև սարսափ»՝ ահա այն բնորոշ անունները, որ կրում են «կոմիկսների» սերիաները։ Դրանց գործող անձանց ղեկավար շարժառիթը հարստություն դիզելու, ամեն գնով հարստանալու ագահ ծարավն է։ Ամեն կերպ փառաբանվում է բիրտ ուժն ու կոպտությունը, լրտեսությունն ու ավազակությունը։ Ընթերցողներին ներշնչվում է ազգային թշնամության և ռասսայական ատելության զգացմունքը։ Ուժգնորեն տարածվում է սուտն ու զրպարտությունը ռուսների, նեգրերի, չինացիների հասցեին։ Պատերազմը ներկայացվում է որպես մի զվարճալի ճամբորդություն։

Այդ բանդիտային մակուլատուրայի նպատակն է աճող սերնդից դաստիարակել խղճից ու պատվից զուրկ մարդիկ, որոնք ատելությամբ համակվեն դեպի այն ամենը, ինչ առաջավոր է, որոնք պատրաստ լինեն սպանելու, թալանելու, տանջելու։ Ամերիկյան գրող Լեգմանը գրում է, թե «կոմիկսները» «վատ գույների և դխալոգների օգնությամբ երեխային այն են սովորեցնում, թե բռնությունը ինչ-որ հե-

րոսություն է, իսկ մարդասպանությունը՝ իսկական կրյանող արկած»։

Ամերիկյան երիտասարդության հանցագործությունների ուղին են մղում և կինոֆիլմերը։ Թողարկվում են մեծ քանակությամբ այսպիսի կինոնկարներ. «Ատրճանակի փողի ներքո», «Ես սպանեցի պատանի Բիլլին», «Կրակել սպանելու համար» և այլն։

Ռադիոհաղորդումներում և հեռուստատեսության մեջ երիտասարդությանը հետապնդում են սարսափի, մարդասպանության և բռնության նույն տեսարանները։ Ամերիկյան ռեակցիոն «Կրիսչեն սայենս մոնիտոր» թերթը հաղորդում է, որ երեխաների համար տրվող միայն մեկ հեռուստատեսային հաղորդումների ժամանակ ներկայացվել է մարդասպանության 13, խուլիգանական հարձակման 14, նեգրերի լինչահարման, ծեծի ու հրդեհի 7, կողոպուտի 9 դեպք և այլն։ Երբ ամերիկյան հայտնի դերասան Լու Կոստելլոյին խնդրել են արտահայտվել այն թեմայի շուրջը, թե «դեպի ուր է գնում Ամերիկան», նա պատասխանել է. «կանցնի ևս մի 15 տարի, և մեր ազգը կդառնա մարդասպանների ու այլասերվածների ազգ, քանի որ հեռուստատեսությունը այլասերում է մեր երեխաներին»։

Բռնության և կործանումների, մարդասպանությունների և կողոպուտների սանձարձակ պրոպագանդան տալիս է իր զզվելի պտուղները։ Բանդիտիզմը դարձել է «ամերիկյան ապրելակերպի» մի անկապտելի մասը։ Աշխարհում չկա ոչ մի երկիր, որը կարո-



ղանար հանցագործությունների թվով մրցել Միացյալ Նահանգների հետ։ Երիտասարդ հանցագործների թիվը ԱՄՆ-ում աճում է չտեսնված տեմպերով։ Ինչպես հաղորդում է ամերիկյան Ասսոշիեյտեդ պրես գործակալությունը, ԱՄՆ-ում ոստիկանությունը տարեկան բռնում է մոտ մեկ միլիոն երիտասարդ հանցագործների։

Անցյալ տարի ամերիկյան մամուլը լիքն էր յոթ տարեկան մանուկ Գլենդ Բրիսբոյսին սպանողին որոնելու վերաբերյալ սենսացիոն հաղորդագրություններով։ Պարզվեց, որ սպանողը եղել է 16 տարեկան մի աշակերտ։ Նա սպանել էր Գլենդին, ինչպես ինքն է ասում, որպեսզի «իմանա, թե մարդ ինչ զգացմունք է ունենում՝ մարդ սպանելիս»։

Նրանք, ովքեր այժմ հրեշավոր ոճրագործություններ են կատարում կորեական հողում, համապատասխան իդեոլոգիական մշակման են ենթարկվել։ Դահիճների իրենց դերի համար նրանք պատրաստվել են ԱՄՆ-ի կապիտալիստական մոնոպոլիաների պրոպագանդիստական մեքենայի և դպրոցական դաստիարակության սիստեմի շնորհիվ։ Ամերիկյան ավազակային բանակի մունդիր հագած այդ նախկին «տնային» գողերը, թալանչիներն ու մարդասպանները Կորեայի դաշտերում խաղաղ բնակչության դեմ կատարում են իրենց դաժանությամբ նմանը չունեցող հանցագործություններ։ Նրանք գնդակահարում են կանանց, երեխաներին ու ծերերին, ոչնչացնում են գյու-

րոցներն ու հիվանդանոցները, կողոպտում և կործանում են հին տաճարներն ու պալատները։

Սակայն ամերիկյան «կտրիճները» Կորեայում կըրած մի շարք կործանիչ պարտություններից հետո աստիճանաբար սկսում են ուշքի գալ ռազմական մոլուցքից։ Ինտերվենտների բանակը հսկայական կորուստներ է կրում։ Բանից դուրս եկավ, որ պատերազմը Կորեայում՝ դա մի զվարճալի զբոսանք չէր, որ հնարավորություն տար անպատիժ կերպով սպանելու և թալանելու։ Ամերիկյան բանակի շատ զինվորներ և սպաներ սկսում են հասկանալ, որ կորեական պատերազմը մղվում է միայն միլիարդատերերի ու միլիոնատերերի շահերի համար։ Հսկայական չափերի է հասել դասալքությունը ԱՄՆ-ի զինված ուժերից։ Օտարերկրյա մամուլի հաղորդագրությունների համաձայն՝ բանակից փախչելու դեպքերը արդեն հասնում են 49 հազարի։ Մինչև անգամ ներկայացուցիչների պալատի անդամ, ռեսպուբլիկական Հովարդ Բաֆֆետը հարկադրված եղավ հայտարարել, որ «մեր երիտասարդության բարոյական վիճակի անկումը հետևանք է կեղծավորության և խաբեության ազգային քաղաքականության։ Մեր երիտասարդները չեն հավատում, թե, մեռնելով Կորեայում, նրանք պաշտպանում են Ամերիկան։ Դա մի արգահատելի ձեռնարկում է, և նրանք հասկանում են այդ»։

Ամերիկյան ռեակցիան ուժեղացնում է տեռորը խաղաղության պաշտպանության կողմնակիցների, բո-



լոր առաջադիմական ուժերի դեմ, հատկապես կոմպարտիայի դեմ։ Դաժան դատաստանի են ենթարկում, հալածում, աշխատանքից զրկում են առաջավոր ուսուցիչներին, պրոֆեսորներին, գրողներին, ովքեր հանդես են գալիս ընդդեմ երիտասարդությանը այլասերող պատերազմի և ռասսայական պրոպագանդայի, ընդդեմ հանցագործության փառաբանման։ Պրոգրեսիվ ինտելիգենցիայի դեմ ուղղված հալածանքը գլխավորում է ներկայացուցիչների պալատի՝ հակաամերիկյան գործունեությունը հետաքննող տխրահռչակ հանձնաժողովը։ Այդ հանձնաժողովի նոր նախագահ, հետաքննության ֆեդերիալ բյուրոյի (ամերիկյան պահնորդական բաժնի) նախկին գործակալ Վելդեն լուսավորությունը... լուրջ վտանգ է համարում ԱՄՆ-ի համար։ Հանդես գալով պետական գրադարանները ուսուցման դիտողական մեթոդների համար անվճար օգտագործելու օրինագծի դեմ, այդ խավարամոլը հայտարարել է. «Կոմունիստական և սոցիալիստական ազդեցության հիմքը լուսավորությունն է։ Եթե մենք հանդես ենք գալիս ընդդեմ սոցիալիզմի ԱՄՆ-ում, որի մասին խոսում ենք բոլորս, մենք պետք է բարեխղճորեն դեմ դուրս գանք այդ օրինագծին»։ Այսպիսով, ամերիկյան պառլամենտի ղեկավար գործիչներից մեկը պաշտոնապես պատերազմ է հայտարարել լուսավորությանը։

Սակայն չնայած տեռորին և հալածանքներին, աճում և ամրապնդվում է ամերիկյան ժողովրդի առաջադիմական ուժերի դիմադրությունը ընդդեմ պատերազմի հրձիգների հանցագործ քաղաքականության։ Գնալով ավելի բարձր է հնչում ամերիկյան մայրերի ու հայրերի զայրույթի ձայնը, որոնք պահանջում են վերջ տալ պատերազմի սանձարձակ պրոպագանդային, մարդասպանությանն ու կողոպուտներին։ ԱՄՆ-ում խաղաղության օգտին ծավալված պայքարի ավանգարդում ընթանում են բանվոր դասակարգը և նրա առաջավոր ջոկատը՝ կոմունիստական պարտիան։ Կոմունիստական պարտիան մերկացնում է իմպերիալիստների ձգտումը՝ ամերիկյան ժողովուրդը դարձնելու բարբարոսների ժողովուրդ, մի կույր գործիք՝ ԱՄՆ-ի իմպերիալիստների համար համաշխարհային տիրապետություն նվաճելու գործում։

Վ. ԼՈՊԱՏԻՆ

Խմբագրի տեղակալ՝ Դ. ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆ

ՎՖ 01094 Պատվեր № 318 Տիրաժ 10000